## Պոմպէյի խռովութիւնները

Պոմպէյի կառավարիչը վերջ տալու համար վերջին օրերու խռովութեանց, չարժման մէջ դրաւ հրետաձիգները, թեթեւ ձիաւորները, արքայական թնդանօթաձիգներու օժանդակ ուժերը եւ քաղաքին կամաւորներու զինուորական կազմակերպութիւնը:

Այս հրամանը տրուած է նախորդ օրուան խռովութեանց ու կռիւներուն հետեւանքով, որոնց ընթացքին վիրաւորուեցան 140 եւ սպաննուեցան 10-15 անձեր:

Երէկ որ եւ է միջադէպ չպատահեցաւ: Մաս մը վաճառատուններ բացին իրենց դռները: Ժողովուրդը կը պահանջէ որ կառավարութեան ձեռք առած խիստ միջոցները՝ քաղաքին անդորրութիւնը պահպանելու համար, շարունակուին:

---

# ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Հ. ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ

28 Մայիս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ ՓԸԹԻ ԺՈՒՐՆԱԼի սրահին մէջ

**21 Rue Cadet, Paris (9) Métro: Cadet**

կը նախագահէ Հ. Հ. Պատուիրակութեան Նախագահ

## Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ

Բանախօսութիւն, երգ, նուագ, բեմական պարեր, խմբական երգ եւ արտասանութիւն:

կէս գիշերէն վերջ պարեր. ճոխ եւ մատչելի պիւֆէ:

**ՄՈՒՏՔ 7.50 ՖՐԱՆՔ**

Մանրամասնութիւնները շուտով:

---

## Մեծ երգահանդէս

ՄԻՈՒԹԻՒԱԼԻԹԷԻ ՄԵԾ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ **24 Rue St. Victor**

5 Յունիս Կիրակի ցերեկ ժամը 3ին

ՍԻՓԱՆ երկսեռ երգչախումբի Նախաձեռնութեամբ

Ի պատիւ իր հիմնադիր-ղեկավար ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ

Մասնակցութեամբ **120** հոգիէ բաղկացած երկսեռ երգչախումբի

կը մասնակցին ծանօթ արուեստագէտներ

ՕՐ. Հ. ԹՈՐՈՍԵԱՆ (երգ), ՕՐ. Մ. ՊՕՏՈՒՐԵԱՆ (դաշնակ)

Պ. Պ. ՍՏ. ՆԱԽԱՍԱՐԴԵԱՆ (պարիթոն), ԻՒՋՊԱՇԵԱՆ (ջութակ)

ԱՐՏ. ՍԷՄԷՐՃԵԱՆ (թենոր)

Երգչախումբի մեներգողներ՝ Տիկ. Մ. ՍՈՒՐԱԲԵԱՆ, ՕՐ. Ա. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Երգահանդէսը նուիրուած է միայն հայ երգի ու երաժշտութեան

Տոմսերու գինները.— 25, 20, 15, 10, 7.50 եւ 5 ֆրանք

Ծանօթ.— Երգչախումբերու անդամներուն, հայ ուսանողներուն, հայ սկաուտներուն, որբերուն եւ որբանոցներուն զեղչեալ տեղեր:

Տոմսերը կը գտնուին Սիփանի անդամներուն մօտ, հայ թերթերու խմբագրատուները, հայ գրատուները, ճաշարանները եւ ծանօթ տեղերը: Նաեւ թատրոնի պիւրօն ամէն առտու: Tél. Odéon 26—90:

---

## ՅԵՐԵԿՈՅԹ

ԻՍԻ ԼԸ ՄՈՒԼԻՆՈՅԻ Ա. Ե. Հ. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

Այսօր Կիրակի ժամը 3ին Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ, (Salle Béchigtachelian), 26 rue Troyon: Sèvres

կը ներկայացուի 48 ՕԽԱՆՈՑ ԳԼԽՈՒ ՓՈՐՁԱՆՔԸ

Հայկական եւ կովկասեան պարեր՝ հայկական տարազով, երգ, նուագ, արտասանութիւններ, եւայլն: Կը մասնակցի Եփրատ նուագախումբը:

կը խօսի՝ Տիկ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Մուտք 5 ֆրանք

Հանրակառք թիւ 1 Լուվրէն եւ իջնել փոն տը Սէվր, փորթ տը վէրսայլէն 23 եւ 32, իջնել փորթ Պիեանգուր: Շոգեկառք կառ Սէն Լազարէն եւ իջնել փօն տը Սէվր:

---

## ԴՊՐՈՑԱՍԵՐԻ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԸ

Դպրոցասէրի Յիսնամեայ Յոբելեանական հանդիսութիւնը պիտի կատարուի այսօր կիրակի կէս օրէ յետոյ ժամը 3ին վարժարանին մէջ: Այս հանդիսակատարութիւնը նախապէս որոշուած էր Մայիս 8ին, սակայն յետաձգուեցաւ հարկեցուցիչ պատճառներով:

Կեդր. վարչութիւնը կը ցաւի յայտարարել, որ տեղի անձկութեան պատճառաւ պիտի սահմանափակէ ներկաներուն թիւը եւ պիտի ընդունի միայն անոնք, որոնք հրաւիրատոմս ունին: Հետեւաբար կը խնդրէ, որ փափաքողները հաճին կանխաւ ապահովել իրենց հրաւիրատոմսերը, դիմելով անձամբ կամ գրաւոր՝ վարժարանին տնօրէնութեան: (1, Boul. du Nord.—Le Raincy, S. et O.):

⁂ Յոբելեանական հանդիսակատարութիւնները տեղի պիտի ունենան նաեւ, Մարսէյլ, Լիոն, Գահիրէ, Ֆիլիպէ, Նիւ Եորք, Պոսթըն, Ֆիլատելֆիա, Փրովիտենս, Տիտրոյիդ, Հարթֆորտ, Հալէպ:

⁂ Դպրոցասէրի Սանուց Միութիւնը, այս առթիւ կը հրաւիրէ բոլոր սանուհիները անխտիր, որ նոյն օրը ներկայ ըլլան վարժարան: Անոնց հրաւիրագիր պիտի չղրկուի:

---

## ԱԼԷՄՇԱՀի

40 ՀՈԳԻՆՈՑ ՍԻՆՖՈՆԻՔ ՕՐՔԷՍԹՐԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

19 Յունիս կէսօրէ վերջ ժամը 4ին

կը խնդրուի նկատի առնել այդթուականը

---



---

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Սէն Ռաֆայէլ, Տիկ. Է. Գ.— 280:
Լա Սէյն Սիւր Մէռ, Ս. Կ.— 35:
Բրիւսէլ, Ս. Գ.— 35:

## ՑՈՒՑԱՀԷՍ

ՖՐԱՆՍԱԿԱՆ բանակի հայ նախկին կամաւորներու միութեան ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ Մայիս 27, Ուրբաթ իրիկուն ժամը 8,45ին, 6 Rue de la Grange Batelière, Փարիզ (9): Օրակարգ՝ քննիչ յանձնախումբի տեղեկագիր եւ ընտրութիւն նոր վարչութեան: Կը հրաւիրուին բոլոր ճակատներու հայ լէգէոնականները:



Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)
*Le Gérant H. STEPHAN*

---

